## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Տէր եւ Տիկին Լորիս Բարանեան 15 Ն. Ֆր. կը նուիրեն Տիկին Արուսեակ Դաւիթեանի յիշատակին։*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Համաչխարհանմաքի Հայրենակցական Միութեան Լիոնի եւ Մարսէյլի մասնաճիւղերը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն հայրենակից Մարտիրոս Մարտիրոսեանի, իր աղջկան եւ ընտանեկան բոլոր պարագաներուն, Տիկ. Եղսա Մարտիրոսեանի կսկծալի մահուան առթիւ։*

## ՀԱՅԱԳԷՍ ՊԱՏԱՐԱԳ

*Վիէննայի Մխիթարեան Միաբանութեան յոբելենական հանդիսութեանց առթիւ հայածէս պատարագը կը ձայնասփռուի այս կիրակի առաւօտ ժամը 9,30ին, միջին ալիք 203,4 մեթր։*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Գրիւսէլէն այրի Տիկին Աննա Մաթոսեան եւ դուստրը Այտա կը ծանուցանեն թէ իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝*

**ՆՇԱՆ Կ. ՄԱԹՈՍԵԱՆԻ**

*մահուան տարելիցին առթիւ (մեռած Պէյրութի մէջ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Ոկտ. ժամ 12ին։*

*Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ

1961–1962 *ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին։ Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները։*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Ճէք – Փոսթալի թիւն է —*

C. C. P. PARIS 5460-11

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Մարսէյլի Մայր Եկեղեցիին համար կ'ուզուի պաշտօնեայ մը։ Գոհացուցիչ վարձատրութիւն։ Դիմել եկեղեցի։*

339, Avenue du Prado, Marseille





Imprimerie Spéciale du journal « Haratch » 32, Rue de Trévise. PARIS (9e)



## Հ. Յ. Դ.

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ։ Կարեւոր օրակարգ։*

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի* 1961 – 1962 *տարեշրջանի արձանագրութիւնները բաց են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է դիմեն Հաստատութեան տնօրէնութեան։*

*Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ։ Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.*

*Ա) Ֆրանսականը, որ տառացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ* պռըվէի եւ պագալորէայի *։*

*Բ) Հայկականը, որ կ'օժտէ սաներէն հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ։*

*Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել Հաստատութեան տնօրէնութեան.—*

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

*Հեռաձայն* 927 – 01,72

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕԳՆՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Բ. խումբի երախաները Փարիզ կը հասնին այս երկուշաբթի (Սեպտ. 4) առաւօտ ժամը 6ին, Կառ տը Լիոն :

## ՆՈՒԷՐՆԵՐ ԿԱՊ. ԽԱՉԻ ՕԳՆՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ

Իրենց կայան այցելութեան առթիւ երկու նոր Սերնդականներ (եղբայր եւ քոյր) 50 Ն. Ֆ.: Տիկին Հարէլեան (Լիոն) 10, Օր. Էլմոնէ Ճիվէլէկեան (Փարիզ) 30 Ն. Ֆ.: Տիկ. Ս. Նշանեան (Փարիզ) մսի ջուրը քամող գործիք մը:

ՃՇԴՈՒՄ — Նախորդ ցանկին մէջ յայտարարուած վարագոյրները նուիրուած են Լիոնի մասնաճիւղին կողմէ:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Տէսինի Կոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Յովսէփ Մալոյեանի, իր կնոջ ու ընտանեկան բոլոր պարագաներուն, իրենց որդւոյն՝ երիտասարդ Վարդանի վաղահաս մահուան առթիւ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Գրիւսէլէն այրի Տիկին Աննա Մաթոսեան եւ դուստրը Այտա կը ծանուցանեն թէ իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝

ՆՇԱՆ Կ. ՄԱԹՈՍԵԱՆի

մահուան տարելիցին առթիւ (մեռած Պէյրութի մէջ) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Ռիւ Ժան Կուժոն:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Արուսեակ Մալաթեան (ծնեալ Մարտիրոսեան) Ամերիկայէն, հօրը անունը՝ Մարտիրոս, մօրը՝ Աննա, կը փնտռէ կնքամօր աղջիկը՝ Սաթենիկ Վարդանեան, որուն վերջին հասցէն Փարիզ էր: Հօրը անունը՝ Վարդան, մօրը՝ Գայծառ, հօրեղբայրները՝ Միրիճան, Օննիկ, Թաշճիկ: Մօտաւորապէս 67 տարեկան, միասին դպրոց գացած են Պոլիս:

Տեղեկացնել՝ Պ. Ժօզէֆ Թոմասեան
12, Bld. Lambert, MARSEILLE 4e.




## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէք – Փոսթալի թիւն է.—
C. C. P. PARIS 5460-11



## ԳԱՂՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Լիոնի եւ Շրջ. Ազգային Միութեան Կեդր. Վարչութիւնը կը յայտարարէ ի գիտութիւն Լիոնահայ ժողովուրդին թէ 1961 Յունիս 4ին Գաղութահայ առաջին ընդհ. ժողովի որոշումով, երկրորդ Գաղութահայ ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Սեպտ. 24ի կիրակին, կէսօրէ վերջ ժամը 3ին, Ազգային Տան մեծ սրահին մէջ ինչ որ այժմէն կը յանձնենք Լիոնահայ ժողովուրդին ուշադրութեան:

Ի դիմաց Լիոնի և Շրջ. Ազգ. Միութեան
Ատենապետ Հ. ՔԻԹԱՊՃԵԱՆ
Ատենադպիր Յ. ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՅԱՐԱԼԷԶՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ
Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
ԳԻՆ 7 Ն. Ֆ.
Դիմել՝ ՅԱՌԱՋին

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ*

1961–1962 ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին: Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները:

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:





Այրի Տիկին Փերուզ Տէլի–Պօյաճեան, Տէր եւ Տիկին Կարպիս Տէլի–Պօյաճեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Պօյաճեան (Պօլիս), սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն դառնաղէտ մահը իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր եւ աներհօր՝

ԻՍԱՀԱԿ ՏԷԼԻ–ՊՕՅԱՃԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ 24 Օգոստոս 1961 իր բնակարանին մէջ:

Յուղարկաւորութեան արարողութիւնը կատարուեցաւ 25 Օգոստ. 1961, Մարսէյլի Փրատօ Ս. Թարգմանչաց Մայր Եկեղեցիին մէջ:

Եւ խորին շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ ներկայ եղան յուղարկաւորութեան, կամ հեռագրով, ծաղկեպսակով եւ նուիրատուութիւններով մասնակից եղան իրենց մեծ սուգին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Ազգ. Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է երաժշտագէտ Գ. Յակոբ Աբրահամեանէ, ի նպաստ եկեղեցւոյ շինութեան, 50 Ն. Ֆ., իր տղուն՝ Վարուժանի ամուսնութեան առթիւ:

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները բաց են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է դիմեն հաստատութեան տնօրէնութեան:

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ: Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.

Ա) Ֆրանսականը, որ տասացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պըրվէի եւ պագալորէայի:

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ:

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարիկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան —

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 – 01,72

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէք – Փոսթալի թիւն է.—

C. C. P. PARIS 5460-11

## ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ապրող Հայերուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.— Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9էն՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով):



## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
## ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Բ. խումբի երախաները Փարիզ կը հասնին այս երկուշաբթի (Սեպտ. 4) առաւօտ ժամը 6ին, Կառ տը Լիոն:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՍԵՒՐ

**1961-1962**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին: Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները:

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով —

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
## ՁԱՐԵՀ ԳԱՍԵԱՆԻ

Սալերու Ա. շարքը, հետեւեալ 4 երգերով.— Իմ Երգը, Նազեր, Իղձ (Գ. Մ. Ալէմշահ) եւ Ծիրանի ծառ (Կոմիտաս):

Դիմել հետեւեալ հասցէներուն.—
ՄԱՐՍԷՅԼ.— Խայիկեան
75, La Canebière
եւ Ալֆագ
23, Rue Ste-Barbe
ՎԱԼԱՆՍ.— Գասեան
6, Rue Bouffier
եւ ամէն շրջանի մէջ հայերէն սալեր ապառողներուն մօտ:
Գին՝ 12 Ն. Ֆ.



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)




## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ

1961–1962 ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին: Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները:

## ՅԱՐԱԼԷԶՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ
Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
ԳԻՆ 7 Ն. Ֆ.
Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Թագուհի Գուլումեան, զաւակները եւ բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ այս կիրակի (10 Սեպտ.) առաւօտեան, Փոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան պաշտօն իրենց ամուսնոյն եւ հօր*

*ԿԱՐԱՊԵՏ ԳՈՒԼՈՒՄԵԱՆԻ*

*մահուան Դ. տարեդարձին առթիւ։*

*Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները։*

×

*Պ. Մելքոն Մանուկեան եւ Օր. Էլիզապէթ Մանուկեան կը ծանուցանեն թէ իրենց սիրեցեալ կնոջ եւ մօր*

*ԶԱՐՈՒՀԻ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Լիոնի Հայոց եկեղեցւոյ մէջ, 295* Ռիւ Պուալօ։

*Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։*

## ԺՈՂՈՎ

*Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղեցւոյ Թաղական Խորհուրդը ժողովի կը հրաւիրէ երկսեռ հասարակութիւնը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2,30ին, եկեղեցւոյ խորհրդարանին մէջ։*

*Կը խնդրուի մայրենի լեզուի նախանձախնդիր հայրենակիցներէն ներկայ գտնուիլ։*





Imprimerie Spéciale du journal « Haratch » 32, Rue de Trévise, PARIS (9e)

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր





## Հ. Յ. Դ.

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Միհրանեան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ ժամը 21ին։*

*Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ*

*ԼԻՈՆ. – Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյ ժամը 9.30ին Յոյներու սրահը։ Կարեւոր օրակարգ։*

*ՇԱՒԻԼ.— Հ.Յ.Դ. Արզումեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին։*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Լոյս տեսաւ 227-228 թիւը հետեւեալ նոխ բովանդակութեամբ —*

*Ակնոցներու փիլիսոփայութիւն* (Հայ-Բոյժ). — *Ռատրէ կերէք* (Տոքթ. Ասֆա-նազ). — *Մօրուախտ* (Տոքթ. Շ. Այվազեան). — *Գիստակ* (Տոքթ. Յովհ. Մանուկեան. — *Առողջ մարդուն կշիռքը* (Տոքթ. Աշնեան)։ *Ի՞նչպէս պէտք է քնանալ* (Տոքթ. Գ. Գալուստեան). — *Բարի աշխարհ* (Ակադեմական Մաղաքեան). — *Հոգի եւ ստամոքս* (Տոքթ. Մօրիս Պուաժէ). — *Փրոֆ. Վարդան Վարդանեան* (Փրոֆ. Լ. Օրբելեան). — *Վայրի շագանակենի* (Յ. Իշխանեան). — *Այրերու ամլութեան պատճառները* (Տոքթ. Պանծալի). — *Ի՞նչ որ գիտենք պնդութեան մասին* (Տոքթ. Պլոնտէլ. — *Գլխացաւ* (Տոքթ. Սերոբեան) — *Միամեայ երախայի մը յուշերը* (Բ.). — *Անթիպիոթիքները* (Տոքթ. Բամպուքեան). — *Նորընծայ բժշկուհի մը* (Ն.). — *Միջավայր եւ հոգեկան վիճակ* (Տոքթ. Արշակ Պօղոսեան). — *Մշեցի կինը* (Գ. Անդրէասեան)։

*Այս թիւը ղրկուեցաւ բոլոր բաժանորդներուն։*

*Յաջորդ թիւը պիտի ղրկուի միայն կանխիկ վճարողներուն։*

*Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք)։ Արտասահման 20 նոր ֆրանք (2000 Ֆ.) երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 Ֆր.)։*

Ահաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը։ Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Պուլկարիայէն եկած տարիքոտ զոյգի մը համար կահաւորուած սենեակ մը խոհանոցի դիւրութեամբ, Փարիզի մէջ։*

*Դիմել Յառաջի վարչութեան։*





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Բ. Տամլամեան, Տէր եւ Տիկին Ժ. Տամլամեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Բ. Խոտիկեան, Տէր եւ Տիկին Վ. Տամլամեան եւ բոլոր ազգականները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝*

*ԲԱՐՍԵՂ ՏԱՄԼԱՄԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ:*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները*

⅄

*ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Վարդուհի Աճէմեան եւ զաւակները՝ Օննիկ, Ժիրայր, Զարուհի եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝*

*ՍՏԵՓԱՆ ԱՃԷՄԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Մարսէյլի Ս. Սահակ – Մեսրոպ Մայր եկեղեցւոյ մէջ:*

*Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:*

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԱԿՈՒՄԲ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ակումբը, Հայ Մշակոյթի Տան մէջ, կը վերաբացուի այսօր Շաբաթ (9 Սեպտ.) ժամը 16-ին: Բաց է մինչեւ ժամը 20:*

*Կը հրաւիրուին շրջանի բոլոր Նոր Սերնդականներն ու համակիր երիտասարդները:*

## ՅԱՐԱՒԷԶՆԵՐՈՒ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

### ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Լոյս տեսաւ 227-228 թիւը հետեւեալ ճոխ բովանդակութեամբ.—*

*Ակնոցներու փիլիսոփայութիւն* (Հայ-Բոյժ). — *Ոսկրէ կերէք* (Տոքթ. Ասֆաճազ). — *Մօրուախտ* (Տոքթ. Շ. Այվազեան). — *Գիտակ* (Տոքթ. Յովհ. Մանուկեան. — *Առողջ մարդուն կշիռքը* (Տոքթ. Աշճեան): *Ի՞նչպէս պէտք է քնանալ* (Տոքթ. Գ. Գալուստեան). — *Քարի աշխարհ* (Ակադեմական Մազաքեան). — *Հոգի եւ ստամոքս* (Տոքթ. Մօրիս Պուամէ). — *Փրոֆ. Վարդան Վարդանեան* (Փրոֆ. Լ. Օրբելեան). — *Վայրի շաղանակենի* (Յ. Իշխանեան). — *Այրերու ամլութեան պատճառները* (Տոքթ. Պանծալի). — *Ի՞նչ որ գիտենք պնդութեան մասին* (Տոքթ. Պլոնտէլ. — *Գլխացաւ* (Տոքթ. Սեքոբեան) — *Միամեայ երախայի մը յուշերը* (Բ.) — *Անթիպիոթիքները* (Տոքթ. Բամպուքեան). — *Նորընծայ բժշկուհի մը* (Ն.). — *Միջավայր եւ հոգեկան վիճակ* (Տոքթ. Արշակ Պօղոսեան). — *Մշեցի կինը* (Գ. Անդրէասեան):

*Այս թիւը ղրկուեցաւ բոլոր բաժանորդներուն:*

*Յաջորդ թիւը պիտի ղրկուի միայն կանխիկ վճարողներուն:*

*Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք): Արտասահման 20 նոր ֆրանք (2000 Ֆ.)*

Անուասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ թաժնեգինը տասը այցեգին կ'արժէ:

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## Հ. Յ. Դ.

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ ժամը 21ին:*

*Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

*ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյ ժամը 8,30ին, Յոյներու սրահը: Կարեւոր օրակարգ:*

*ՇԱՒԻԼ.— Հ.Յ.Դ. Արզումեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին:*

*ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ.Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—*

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր- ընկերուհիները:*

*ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին:*

*ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէ, 16 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:*

*ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:*

*ԱԿՆՈՒՆԻ ենթակոմիտէ, 12 Սեպտ. Երեքշաբթի, երեկոյ ժամը ճիշդ 21ին:*

*ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:*

*ՀԱՄԱԶԱՍՊ խումբ, 16 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:*

*ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:*

*ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:*

*ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:*

*ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբ, 18 Սեպտ. Երկուշաբթի երեկոյ, ժամը ճիշդ 21ին:*

*ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:*

*ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:*

*ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:*

*ՔԵՌԻ (Լքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:*

*Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի և վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները:*



ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*ՅԱՌԱՋի վարչութիւնը միայն գրաւոր ազդեր կ'ընդունի, կը խնդրուի հեռաձայնով ազդ չտալ:*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Շէք – Փոսթալի թիւն է.—*

C. C. P. PARIS 5460-11

### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:





## ՆՈՒԷՐՆԵՐ

*Գ. Վարդէն Եղեկէլեան (Սէն Ժերմէն Ան Լէ), Տիկին Արուսեակ Դաւիթեանի մահուան քառասունքին առթիւ 20ական Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերուն եւ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ին ։*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՙՙԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՙՙԸ

#### *ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ*

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

*Վեցերորդ քաղաքապետարանի սրահ - ներուն մէջ ։*

*Կը խնդրուի ծանուցանել*
*ՀՄԱՅԵԱԿ Ծ. Վ. ԳԱԽԹԻԱՐԵԱՆԻ վախճանումը, որ տեղի ունեցաւ Սեպտ. 8ին, 82 տարեկանին, (պաշտօնավարած է Պոլիս)։*

*Ցուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ Այս Զորեքշաբթի առաւօտ ժամը 9ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։*

*Փարիզի Եկեղեցւոյ Հոգեւոր Դասը, վարչութիւնը եւ Հոգաբարձութիւնը ցաւով կը ծանուցանեն*
*ՏԷՐ ՀՄԱՅԵԱԿ Ծ. Վ. ԳԱԽԹԻԱՐԵԱՆԻ վախճանումը ։*

*Թաղման կարգը եւ վերջին օծումը տեղի կ'ունենան այս Զորեքշաբթի ժամը 9-ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, մատուցմամբ Ս. պատարագի ։*

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը խոր ցաւակցութիւն կը յայտնէ հայրենակից Գ. Մանուկ Գույումճեանի կնկծալի մահուան առթիւ իր այրիին, զաւակներուն, մօր, զոքանչմօր, եղբօր, քրոջ (Փարիզ), եւ ընտանեկան բոլոր պարագաներուն ։*

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Սարգիս Բարայեան, ուսուցիչ Դիլիջանէն կը փնտռէ իր ազգականը՝ Լեւոն Սարգիսեան։ Տեղեկացնել.—*

17, Rue de l'Arrivée
Enghien-les-Bains (S. et O.)



Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### *ԱԶԴ ՏՈՒՌՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ*

*ՅԱՌԱՋի վարչութիւնը միայն* գրաւոր ազդեր *կ'ընդունի, կը խնդրուի հեռաձայնով ազդ չտալ ։*

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Շէք – Փոսթալի թիւն է.—*
C. C. P. PARIS 5460-11

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅ - ԲՈՅԺ

#### *ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Լոյս տեսաւ 227-228 թիւը հետեւեալ ճոխ բովանդակութեամբ.—*

*Ակնոցներու փիլիսոփայութիւն* (Հայ-Բոյժ). — *Ոստրէ կերէք* (Տոքթ. Ասֆանազ). — *Մօրուախտ* (Տոքթ. Շ. Այվազեան). — *Գիտակ* (Տոքթ. Յովհ. Մանուկեան. — *Առողջ մարդուն կշիռքը* (Տոքթ. Աշճեան)։ *Ի՞նչպէս պէտք է քնանալ* (Տոքթ. Գ. Գալուստեան). — *Քարի աշխարհ* (Ակադեմական Մաղաքեան). — *Հոգի եւ ստամոքս* (Տոքթ. Մօրիս Պուածէ). — *Փրոֆ. Վարդան Վարդանեան* (Փրօֆ. Լ. Օրբելեան). — *Վայրի շագանակենի* (Յ. Իշխանեան). — *Այրերու ամլութեան պատճառները* (Տոքթ. Պանծալի). — *Ի՞նչ որ գիտենք սնդութեան մասին* (Տոքթ. Պլանտէլ. — *Գլխացաւ* (Տոքթ. Սեբոբեան) — *Միամեայ երախայի մը յուշերը* (Բ.) — *Անթիպիոթիքները* (Տոքթ. Բամպուքեան). — *Նորընծայ բժշկուհի մը* (Ն.). — *Միջավայր եւ հոգեկան վիճակ* (Տոքթ. Արշակ Պօղոսեան). — *Մշեցի կինը* (Գ. Անդրէասեան)։

*Այս թիւը ղրկուեցաւ բոլոր բաժանորդներուն։*

*Յաջորդ թիւը պիտի ղրկուի միայն կանխիկ վճարողներուն։*

*Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր Ֆրանք (1500 Ֆրանք)։ Արտասահման 20 նոր Ֆրանք (2000 Ֆ.)*

Ահաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը։ Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ ։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*ՍԵՒՐ*

*ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ*

1961–1962 *ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին։ Վարժարանի Տնօրէնութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները։*




### Կ'ՈՒԶՈՒԻ

*Հայ օրիորդ մը (14 – 16 տարեկան), իբրեւ սկսնակ կանանց* քանթէքսիոնի *ճիւղին մէջ աշխատելու համար։*

*Դիմել՝*

MAISON ANNY
43, Rue Thubaneau, Marseille
*(Գ. յարկ)* ։

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը տեղի կ'ունենայ այս Հինգշաբթի (14 ՍԵՊՏ.), ժամը 21ին Մշակոյթի Տան մէջ։ Կարեւոր օրակարգ. Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է ։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ դրաւիրուած ընկերական ժողովները.—*

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէ, սովորաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր-ընկերուհիները ։*

*ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին։*

*ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէ, 16 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին։*

*ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին.*

*ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափոմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։*

*ՀԱՄԱԶԱՍՊ խումբ, 16 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին,*

*ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին։*

*ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։*

*ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին։*

*ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբ, 18 Սեպտ. Երկուշաբթի երեկոյ, ժամը ճիշդ 21ին*

*ԳԷՈՐԳ ՉԱՒՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին։*

*ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։*

*ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին*

*ՔԵՌԻ (էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին.*

*Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները. Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները.*



### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան ։

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԷՆ

Տիկին Հեղինա Սէֆէրեան (Անիէռէն) վեց ամսուան Յառաջ կը նուիրէ Տիկին Թորոսեանի (Լուարէ) :

Այրի Տիկին Ժախեան, Տէր եւ Տիկին Էտի Ժախեան, Տէր եւ Տիկին Գ. Ժախեան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Մելիքեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Գրիգոր Մելիքեան, ինչպէս նաեւ Նիկողոսեան, Բամպուքճեան, Արգումանեան, Մելիքեան, Արշաւիր, Գասմաճեան եւ Մըսըրեան ընտանիքները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց պաւկին, հօր, քեռայրին եւ ազգականին՝

ՎԱՂԻՆԱԿ ԺԱԽԵԱՆԻ
(Էրզրումցի, 59 տարեկան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Գրիւսէլ, Սեպտեմբեր 13ին :

Ցուղարկաւորութիւնը կը կատարուի, այսօր, Շաբաթ Զըրչ Օֆ Սէնթ-Ճօնի մէջ, ըստ հայկական ծէսի (181 Շոսէ Վլէօրկաթ, Իքսէլ) ժամը 10ին: Մարմինը պիտի ամփոփուի Սէն Ժիլ գերեզմանատունը :

163, Rue de la Victoire 4, Rue Bosquet. Bruxelles

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Պ. Էտի Ժախեանի, ինչպէս նաեւ Մելիքեան ընտանիքներուն եւ բոլոր պարագաներուն :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Անդրանիկ Ցակոբեան, ինչպէս նաեւ Երամեան, Ցարութիւնեան եւ Գըլըճեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց կնոջ, զաւկին եւ ազգականին

ԼԻՒՍԻ ՑԱԿՈԲԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ, այս Կիրակի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

ԱՐՄԵՆԱԿ ԴԱՍԱՊԵԱՆԻ

յիշատակին հոգեհանգիստը տեղի պիտի ունենայ Սեպտեմբեր 24ի Կիրակին :



Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր





### ՊԱՏԱՐԱԳ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն պատարագ, այս Կիրակի ժամը 10ին: Պիտի պատարագէ եւ քարոզէ Հայրապետական պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ Ե-ՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :

Երեկոյեան Թափօր Խաչվերացի, ժամը 5ին: Երկուշաբթի, 18 Սեպտ. յիշատակ Մեռելոց Ս. Պատարագ ժամը 10ին:

### ՇԱՒԻԼ

Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը տեղեկացնէ թէ կամքէ անկախ պատճառներով, այս Կիրակի պատարագ տեղի պիտի չունենայ :

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Խաչվերացի տօնը պիտի կատարուի օրուան յատուկ հանդիսաւոր արարողութեամբ, ինչպէս իրիկուան Անդաստանի Թափօրը :

### ԽԱՉՎԵՐԱՑԻ ՏՕՆԸ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

Պօմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ՝ Խաչվերացի տօնին առթիւ, այս Կիրակի Թաղիս Ս. Գ. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի հանդիսաւոր պատարագ եւ յաջորդ օր, երկուշաբթի՝ պատարագ եւ հոգեհանգիստ, ի յիշատակ ազգիս ընդհ. ննջեցելոց հոգւոց :

### ԽԱՉՎԵՐԱՑԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ այս Կիրակի, Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի, Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ եւ քարոզ օրուան տօնին առթիւ, մասնակցութեամբ երկսեռ երգչախումբին եւ տեղւոյն դպրաց դասուն: Կը պատարագէ եւ կը քարոզէ Վարազ Քհնյ. Աւագեան :

Նոյն օրը յետ միջօրէի ժամը 3ին Խաչվերացի մեծահանդէս Թափօր, եւ անդաստան եկեղեցւոյ շուրջ :

### ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսրի մասնաճիւղի կողմէ Սեպտեմբեր 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 17էն 22, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, վերամուտի առթիւ առաջին ձեռնարկը: Ընկերական հաճելի մթնոլորտ, գեղարուեստական բաժին :

Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ համակիր երիտասարդութիւնը :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի, Տօն Վերացման Ս. Խաչի, եւ անուանատօն Հայ Կաթողիկէ Ս. Խաչ Ժողովրդապետական Եկեղեցւոյ, առաւօտեան ժամը 10ին պիտի կատարուի ժամերգութիւն ապա ժամը 10.30ին պիտի մատուցուի հանդիսաւոր ձայնաւոր պատարագ :

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
ՍԵՒՐ

ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ

1961–1962 ուսումնական տարին կը բացուի Երկուշաբթի Սեպտեմբեր 18ին: Վարժարանի Տեսչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նոյն թուականին անյապաղ վարժարան առաջնորդեն իրենց զաւակները :



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. Վարդան Ենթակոմիտէի ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Առնուվիլի մէջ, ծանօթ հաւաքատեղին: Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ գտնուիլ անպայման

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր-ընկերուհիները :

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին:

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբ, 18 Սեպտ. Երկուշաբթի երեկոյ, ժամը ճիշդ 21ին.

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները. Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի և վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :





Գ. Տիրան Կէօսէմեան, Տէր եւ Տիկին Արամ Յովհաննէսեան եւ զաւակները, Այրի Տիկին Ա. Գ. Յովհաննէսեան եւ զաւակները, Այրի Տիկին Սարաֆեան (Սկիւտար) ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՔՐԻՍՏԻՆԷ ԿԷՕՍԷՄԵԱՆԻ
(Ծնեալ Յովհաննէսեան, Էօսէմիշցի)

մահը, որ տեղի ունեցաւ Սեպտ. 14ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երկուշաբթի (Սեպտ. 18) կէսօրէ վերջ ժամը 2ին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Անիէռ, Քաթր – Ուըթի գերեզմանատունը: Եկեղեցիէն գերեզման՝ օթօքար :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իբրեւ այդ նկատել :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Անիէռէն Գ. Տիրան Տէվէճեան 30 Ն. Ֆ. կը նուիրէ Կապոյտ Խաչի օգափոխութեան կայանին Տիկին Արուսեակ Դաւիթեանի յիշատակին (մահուան քառասունքին առթիւ): (Ստանալ Ցառաչէն):

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## "ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը
### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

Վեցերորդ քաղաքապետարանի սրահներուն մէջ :

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
## ԶԱՐԵՀ ԳԱՍԵԱՆԻ

Սալերու Ա. շարքը, հետեւեալ 4 երգերով.— Իմ Երգը, Նազեր, Իղձ (Գ. Մ. Ալէմշահ) եւ Միրանի ծառ (Կոմիտաս):

Դիմել հետեւեալ հասցէներուն.—
ՄԱՐՍԷՅԼ.— Խայիկեան
75, La Canebière
եւ Ալֆազ
23, Rue Ste-Barbe
ՎԱԼԱՆՍ.— Գասեան
6, Rue Bouffier
եւ ամէն շրջանի մէջ հայերէն սալեր սպառողներուն մօտ:

Գին՝ 12 Ն. Ֆ.

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ
ԴԷՊԻ
## ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ
Երթուղարձի գիներն են, կերակուրով
Վերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

Բ. կարգ 3046 Ն. Ֆ.
Գ. կարգ 2506 Ն. Ֆ.

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն:

ՈՒՂԵԳՈՅՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն:

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով:

Մեր գրասենեակը կը զբաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով:

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ
48, Rue de la République
Tél.: 20.47.22
MARSEILLE

●

ՓԱՐԻԶ
Մասնաճիւղ
7, Rue Auber, 7
Tél : RIC. 63-69
PARIS (9e)

## ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի մասնաճիւղի կողմէ Սեպտեմբեր 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 17էն 22, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, վերամուտի առթիւ առաջին ձեռնարկը: Ընկերական հաճելի մթնոլորտ, գեղարուեստական բաժին :

Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ համակիր երիտասարդութիւնը :

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

—o—

ՄՈՒՏՔԻ ԹՈՒԱԿԱՆ

Հինգշաբթի առաւօտ, Սեպտ. 21

## ՎԵՐԱՄՈՒՏ

Իսիի Ներսէսեան վարժարանը կը վերաբացուի Սեպտ. 21ին:

Յարգելի ծնողքներէն կը խնդրուի անյապաղ արձանագրել տալ իրենց զաւակները :

## ԾԱԽՈՒ Է
MERCERIE - BONNETERIE
### ԽԱՆՈՒԹ ՄԸ

Երկու սենեակ եւ խոհանոցով : Դիմել՝ Տիկին Մարգրիտ Գույումճեանի,

130, Rue Etienne Dolet, Alfortville

## Կ'ՈՒԶՈՒԻ

Հանդերձատան եւ ննջարաններու աշխատանքներու համար կին մը կ'ուզուի :

Դիմել Ս. Մուրատ վարժարան,
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ.-Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն սովորականէ ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր-ընկերուհիները :

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Ռուբէն Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին:

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լաֆօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբ, 18 Սեպտ Երկուշաբթի երեկոյ, ժամը ճիշդ 21ին

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին

ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

1) Entrepreneurs jauge 7, réctiligne
2) Entrepreneurs pour montage [illegible] grande série.

**Terzian**
3, Rue Poissonnière, PARIS (2e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## "ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

Վեցերորդ քաղաքապետարանի սրահներուն մէջ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ալֆորվիլի Ս. Գ. Գ. եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը որոշած է հոգեհանգստեան պաշտօն կատարել Կիրակի Ս. եկեղեցւոյ ծառայող բոլոր հոգաբարձուներու, ե - կեղեցասէր Տիկնանց Միութեան հանգուցեալ անդամուհիներու եւ Տէր Գէորգ քհնյ. Դաւիթեանի յիշատակին :

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները :

## ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Յակոբ Թորոսեան եւ զաւակը (Փարիզ), Տէր եւ Տիկին Թադէոս Թորոսեան եւ զաւակները (Սէնթ Էթիէն), Պուլկարիա գտնուող իրենց ողբացեալ եղբօր Յարութիւն Թորոսեանի յիշատակին հարիւր Ն. Ֆ. Կապոյտ Խաչին, հարիւր Ն. Ֆ. Կարմիր Խաչին կը նուիրեն : (Կարմիր Խաչի բաժինը ստանալ՝ «Յառաջ»էն) :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Իսիի Երիմեան վարժարանը կը վերաբացուի Սեպտ. 21ին :

Յարգելի ծնողքներէն կը խնդրուի անյապաղ արձանագրել տալ իրենց զաւակները :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ :

Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Գ. Վահրամ Միսթիքի կողմէ :

Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան :

### ՎԵՐԱՄՈՒՏ

## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Ալֆորվիլի Հայկ. վարժարանի, այս Հինգշաբթի, Սեպտեմբեր 21ին : Ուսուցիչներն են.— Օր. Արփինէ Զօթիկեան եւ Գ. Թորոսեան : Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները առաջնորդել :

### ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան :

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Շաւիլի դպրոցի դասընթացքները կը սկսին այսօր Հինգշաբթի առաւօտ :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ ողբացեալ Կիւլիզա Զաքէեանի յուղարկաւորութեան առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, Ն.Ֆ.ով.— Տիկին Է. Չըրաչեան 10, (նաեւ 10 Մարսէյլի Աղքատախնամին եւ 10 Հ. Բ. Ը. Միութեան), Տիկին Տօնիկեան (10 Աղքատ.) Տիկին Կարապետեան 30 եւ Տիկին Սիսակեան տասը Բարեգործականին, Ոմն (քսան Աղքատախնամին), Գ. Տէլիպօյաճեան տասը, Գ. Վ. Գանտիկեան տասը, (տասը Աղքատախնամին), Գ. Մաթիկեան (տասը Աղքատ.), Ա. Գապայեան (տասը Աղքատ.), Յ. Աչճիպաշեան (տասը Աղքատ.), Զ. Քէօթահեալեան հինգ, Հ. Բ. Ը. Միութեան 20, (20 Աղքատ.), (քսան Բարեգործ.), Զ. Ալեքսանեան (տասը Աղքատ.), Մայր Եկեղեցիի Դպրախումբ (տասը Աղքատ. եւ տասը Բարեգործ.), Տէր եւ Տիկին Շ. Փիրանեան տասը (տասը Աղքատ. եւ 10 Բարեգործ.), Վ. Թորամանեան (տասը Աղքատ.), Վ. Սահաթճեան (տասը Բարեգործ.) :— Ողբացեալ Ստ. Աճէմեանի քառասունքի Հոգեհանգիստին առիթով.— Աճէմեան ընտանիք տասը, (տասը Աղքատ. եւ տասը Հայ ծերանոցին), Տէր եւ Տիկին Սէֆէրեան քսան, Տիկին Հ. Կեմալմազեան (տասը Աղքատախնամին) : Աւանդ գումարները ստանալ Եկեղեցիի քարտուղարութենէն :

### ԳԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսիի մասնաճիւղի կողմէ Սեպտեմբեր 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 17էն 22, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, վերամուտի առթիւ առաջին ձեռնարկը : Ընկերական հաճելի մթնոլորտ, գեղարուեստական բաժին :

Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ համակիր երիտասարդութիւնը :

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, 1 Հոկտեմբեր, Կիրակի, աւանդական մատաղօրհնութիւնը տեղի պիտի ունենայ : Այս առթիւ պիտի պատարագէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :

Ամէն անոնք որ կը փափաքին մասնակցիլ իրենց նուէրները պէտք է ղրկեն Գ. Ա. Մարտիրոսեանի :

27 Րիւ Սէն – Ժիւսթ, Առնուվիլ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ :

Մարսիլիահայ կազմակերպութիւններէն կը խնդրուի չխաչաձեւել :

×

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը Հոկտեմբեր ութին, Կիրակի :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը փոխադրուած է 17 րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ :

Կը խնդրուի ծնողքներէն, որ առաջնորդեն իրենց զաւակները այս Հինգշաբթի ժամը 2–4 :

Դասաւանդութիւնը կը սկսի նոյն օրը :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Հանդերձատան եւ ննջարաններու աշխատանքներու համար կին մը կ'ուզուի :

Դիմել Ս. Մուրատ վարժարան,
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ազրիէլ - Սերոբ - Մ. Եօթնեղբայրեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր- ընկերուհիները :

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին :

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :

ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին :

ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբ, 18 Սեպտ. Երկուշաբթի երեկոյ, ժամը ճիշդ 21ին :

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին :

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :

ՆԻԿՈՂ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները : Շատ կարեւոր օրակարգ : Բոլոր ընկեր- ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին : Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## "ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

Վեցերորդ քաղաքապետարանի սրահներուն մէջ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Զապէլ Հաչերիկեան եւ զաւակները՝ Փիէր եւ Ալիէթ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԽԱՉԻԿ ՀԱՉԵՐԻԿԵԱՆԻ

(Պարտիզակցի)

մահուան 11րդ տարեդարձին եւ իրենց ծնողքին՝

ՊԵՏՐՈՍ ԵՒ ՍԱՆԴՈՒԽՏ

ՅԱԿՈԲԵԱՆԻ յիշատակին, այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

×

Այս առթիւ Խաչիկ Հաչերիկեանի յիշատակին, Տիկին Հաչերիկեան 15 Ն. Ֆ. կը նուիրէ Յառաջի բարգաւաճման։

×

Ալֆորվիլի Ս. Գ. Պ. եկեղեցւոյ հոգաբարձութիւնը որոշած է հոգեհանգստեան պաշտօն կատարել Կիրակի Ս. եկեղեցւոյ ծառայող բոլոր հոգաբարձուներու, եկեղեցասէր Տիկնանց Միութեան հանգուցեալ անդամուհիներու եւ Տէր Գէորգ քհնյ. Դաւիթեանի յիշատակին։

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները։

×

Այրի Տիկին Սիրանուշ Տերիկեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳԵՂԱՄ ՏԵՐԻԿԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ, այս Կիրակի Պոմոնի Ս. Գ. Լուսաւորիչ եկեղեցին մէջ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՓԱՐԻԶԻ եկեղեցւոյ դիւանը իր կրթ. ձեռնարկներուն համար ստացած է շնորհակալութեամբ հետեւեալ նուէրները։ Տէր եւ Տիկին Կարպիս Նիկողոսեան, Սեդրակ եւ Սարօ Գարակէօզեան, ողբ. Քրիստինէ Կէօտէմեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի քանական Ն.Ֆ.։

## ՆՈՒԷՐ

Տիկին Արուսեակ Դաւիթեանի մահուան քառասունքին առթիւ Տէր եւ Տիկ. Գրիգորեան եւ Տէր եւ Տիկին Վարդգէս Տակառեան քսանական Ն. Ֆ. կը նուիրեն Կարմիր Խաչին, քսանական Ն. Ֆ. Կապոյտ Խաչին։ (Ստանալ Յառաջէն)։

## ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսիի մասնաճիւղի կողմէ Սեպտեմբեր 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 17էն 22, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, վերամուտի առթիւ առաջին ձեռնարկը։ Ընկերական հաճելի մթնոլորտ, գեղարուեստական բաժին։

Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ համակիր երիտասարդութիւնը։

ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան։

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած Անիէռ – Պուա Քոլոմպի հայկ. դպրոցի հինգշաբթի օրուան դասընթացքները բացուած են Սեպտեմբեր 21էն սկսեալ, Անիէռ Քոլէժ Ժիպանի նախկին դպրոցի սրահին մէջ, 2-4 Րիւ Մարի Լօռ, Պուա Քոլոմպ (Սէն), շրջանի հայ ծնողքներէն կը խնդրուի որ առաջնորդեն իրենց զաւակները արձանագրութեան համար։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ։

Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Պ. Վահրամ Միսթիքի կողմէ։

Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ։

Մարսիլիահայ կազմակերպութիւններէն կը խնդրուի չխաչաձեւել։

×

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը Հոկտեմբեր ութին, Կիրակի։

ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ԱՄՍԱԳԼԽՈՒՆ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ՆՈՐ ՇՐՋԱՆ

Մինչեւ ամսագլուխ՝ բաժանորդները կը ստանան ՀԱՅ – ԲՈՅԺի 229 – 230րդ թիւը, հետեւեալ ճոխ եւ շահեկան բովանդակութեամբ.—

Նիցչէ մեռաւ խենթութեան մէջ (Հայ – Բոյժ).— Ծոմապահութիւն (Տոքթ. Գ. Ալթունեան).— Երբ աղիքները չեն գործեր (Տոքթ. Փօլ տը Պօէսի).— Վիշապածառ (Յ. Իշխանեան).— Դարձեալ խլիրդ (Քաղեան).— Հեռաձայնով խօսողներու հիւանդութիւն (Տոքթ. Աշնեան).— Հայերը հնարած են գարեջուրը (Յովհ. Պապէսեան).— «Բժիշկ» մեքենաներ (Փրոֆ. Գարին).— Ուղեղը՝ հրաշակերտ գործիք (Տոքթ. Գալուստեան).— Ի՞նչպէս կը մեծնայ երախան (Տոքթ. Մառի Շիրլի).— Ի՞նչպէս լողցնել երախան (Մ. Ազատեան).— Երեւանի ձեռագրատունը (Ա. Ադայեան).— Հայկական կերակուրները (Տոքթ. Շ. Այվազեան). — Զաւակագործութիւն՝ ըստ արհեստի (Տոքթ. Պանծալի). — Ի՞նչպէս կերակրել երախան (Տոքթ. Մառի Փարմանթիէ)։

ՄԱՄՈՒԼԻ տակ է 231 – 233րդ թիւը։

Ահաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը։ Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր – Սերոբ – Մ. Եօթնեղբայրեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովներ.—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր-ընկերուհիները։

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին։

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին։

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։

ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին։

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին։

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին։

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին։

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին

ՔԵՌԻ (էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին։

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները։ Շատ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները։

## ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, 1 Հոկտեմբեր, Կիրակի, աւանդական մատաղօրհնութիւնը տեղի պիտի ունենայ։ Այս առթիւ պիտի պատարագէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ։

Ամէն անոնք որ կը փափաքին մասնակցիլ իրենց նուէրները պէտք է գրեն Պ. Ա. Մարտիրոսեանի։

27 Րիւ Սէն – Ժիւսթ, Առնուվիլ։

### ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Իրենց անմոռանալի սիրելիին Հրաչ Սարգիսեանի մահուան եօթներորդ տարեդարձին առթիւ, Յովհ. Թէրլէմէզեան եւ Արշալոյս Հ. Սարգիսեան միասնաբար կը նուիրեն 25ական Ն. Ֆ. հետեւեալ հաստատութեանց.— Մշակոյթի Տուն, Եկեղեցւոյ Կրթ. գործ, Դպրոցասէր եւ Ազգասիրական: (Ստանալ Յառաջէն):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Տիրան Կէօտէմեան, ինչպէս նաեւ Յովհաննէսեան եւ Սարաֆեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով, փոխան ծաղկեպսակի նուէրներու ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՔՐԻՍՏԻՆԷ ԿԷՕՏԷՄԵԱՆԻ

մահուան առթիւ:

### ՆՈՒԷՐ

Տրակինեանէն Հաճեան ընտանիքը երեսունական Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերուն, Գրիգոր Լորքեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի: (Ստանալ «Յառաջ»էն):

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ալֆորվիլի Ս. Պ. Պ. եկեղեցւոյ հոգաբարձութիւնը որոշած է հոգեհանգստեան պաշտօն կատարել Կիրակի Ս. եկեղեցւոյ ծառայող բոլոր հոգաբարձուներու, եկեղեցասէր Տիկնանց Միութեան հանգուցեալ անդամուհիներու եւ Տէր Գէորգ քհնյ. Դաւիթեանի յիշատակին:

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

×

Այրի Տիկին Սիրանուշ Ծերիկեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳԵՂԱՄ ԾԵՐԻԿԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ, այս Կիրակի Պօմոնի Ս. Գ. Լուսաւորիչ եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Վալանսի Հայ Առաքել. Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ Վալանսահայութեան թէ Սեպտեմբեր 21էն ի վեր վերսկսած են հայերէնի դասընթացքները նոյն սրահին մէջ ամէն Հինգշաբթի:

### ՅԱՐԱՒԷԶՆԵՐՈՒ ԴԻՒԱՃԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ա. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ԳԻՆ 7 Ն. Ֆ.

Դիմել՝ ՅԱՌԱՋԻՆ

### ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսիի մասնաճիւղի կողմէ Սեպտեմբեր 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 17էն 22, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, վերամուտի առթիւ առաջին ձեռնարկը: Ընկերական հաճելի մթնոլորտ, գեղարուեստական բաժին:

Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ համակիր երիտասարդութիւնը:

### ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան:

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### "ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

Վեցերորդ քաղաքապետարանի սրահներուն մէջ:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Պ. Վահրամ Միսթիքի կողմէ:

Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մաքուր սերունդի ազգ. դաստիարակութեան:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած Անիէռ – Պուա Քոլոմպի հայկ. դպրոցի Հինգշաբթի օրուան դասընթացքները բացուած են Սեպտեմբեր 21էն սկսեալ, Անիէռ Քոլէժ Թիպանի նախկին դպրոցի սրահին մէջ, 2–4 Րիւ Մարիլոն, Պուա Քոլոմպ (Սէն), շրջանի հայ ծնողքներէն կը խնդրուի որ առաջնորդեն իրենց զաւակները արձանագրութեան համար:

### ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Տիկին Արշալոյս Հ. Սարգիսեանի նոր հասցէն է.—

4, Rue de la Mare
MONTMORENCY (S. et O.)
Tél.: 964-19-67

Imprimerie Speciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ:

Մարսիլիահայ կազմակերպութիւններէն կը խնդրուի չխաչաձեւել:

×

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը Հոկտեմբեր ութին, Կիրակի:

### ԾԱԽՈՒ ԽԱՆՈՒԹ

Ծախու է նպարավաճառի 35 տարուան խանութ մը (Արթինեան), վրան փոքր յարկաբաժին մը ունի:

Դիմել 28 Րիւ Լըռած, մեթրօ Պէլվիլ, ամէն օր, ժամը 11էն 12:



### Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր – Սերոբ Մ. Եօթնեղբայրեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր-ընկերուհիները:

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ եւ «Շաւարշ Միսաքեան» խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին:

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ, 24 Սեպտ. Կիրակի կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լաֆօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ԹԱԹՈՒԼ խումբ, 24 Սեպտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ, 23 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները:

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, 1 Հոկտեմբեր, Կիրակի, աւանդական մատաղօրհնութիւնը տեղի պիտի ունենայ: Այս առթիւ պիտի պատարագէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Ամէն անոնք որ կը փափաքին մասնակցիլ իրենց նուէրները պէտք է ղրկեն Պ. Ա. Մարտիրոսեանի:

27 Րիւ Սէն – Ժիւսթ, Առնուվիլ:

ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան :*

*Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## "ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ"Ը

*ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ*

7 Հոկտեմբեր, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս

*Վէյերօրդ քաղաքապետարանի սրահներուն մէջ :*

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Չէք – Փոստալի թիւն է.—*

C. C. P. PARIS 5460-11

*ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ*

*Տիկին Արշալոյս Հ. Սարգիսեանի նոր հասցէն է .—*

4, Rue de la Mare
MONTMORENCY (S. et O.)
Tél. : 964-19-67



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Գ. Գինոս Տէրոյեան կը փնտռէ իր որդին՝ Արսէն Տէրոյեան զինուոր 1939–45ին կորսուած : Կը կարծուի թէ Ֆրանսա կամ Ամերիկա է :*

×

*Բաղալեան Կիւրեղ, մօր անունը՝ Գիւզէլ, Թերջանցի. կորսուած 1943ին : Հօր անունը՝ Յարութիւն :*

*Իմացնել Գէորգ Մարգարեանի՝*

33, Cité de la Lunette, Lancey (Isère-France)

*Կը խնդրուի Ամերիկայի թերթերէն արտատպել :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Պուլկարիայէն եկած տարիքոտ զոյգի մը համար կահաւորուած սենեակ մը խոհանոցի դիւրութեամբ, Փարիզի մէջ :*

*Դիմել Յառաջի վարչութեան :*

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

*ՎԵՐԱՄՈՒՏ*

*Ֆ. Կ. Խաչի Գօմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝* Հոկտեմբեր 5ին*, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ :*

*Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Գ. Վահրամ Միսթիքի կողմէ :*

*Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան :*

*ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ԱՄՍԱԳԼԽՈՒՆ*

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ՆՈՐ ՇՐՋԱՆ

*·Մինչեւ ամսագլուխ՝ բաժանորդները կը ստանան ՀԱՅ – ԲՈՅԺի* 229 – 230*րդ թիւը, հետեւեալ ճոխ եւ շահեկան բովանդակութեամբ .—*

*Նիցշէ մեռաւ խենթութեան մէջ* (Հայ – Բոյժ) *.— Ծոմապահութիւն* (Տոքթ. Գ. Ալթունեան) *.— Երբ աղիքները չեն գործեր* (Տոքթ. Փօլ տը Գօէսի) *.— Վիշապածառ* (Ե. Իշխանեան) *.— Դարձեալ խլիրդ* (Քաղհան) *.— Հեռաձայնով խօսողներու հիւանդութիւն* (Տոքթ. Աշճեան) *.— Հայերը հնարած են զարեջուրը* (Յովհ. Պապէսեան) *.— «Բժիշկ» մեքենաներ* (Փրոֆ. Պարին) *.— Ուղեղը՝ հրաշակերտ գործիք* (Տոքթ. Գալուստեան) *.— Ի՞նչպէս կը մեծնայ երախան* (Տոքթ. Մառի Շիրլի) *.— Ի՞նչպէս լողցնել երախան* (Մ. Ազատեան) *.— Երեւանի ձեռագրատունը* (Ա. Ազայեան) *.— Հայկական կերակուրները* (Տոքթ. Շ. Այվազեան). *— Ջաւակագործութիւն՝ ըստ արհեստի* (Տոքթ. Պանծալի). *— Ի՞նչպէս կերակրել երախան* (Տոքթ. Մառի Փարմանթիէ) :

*ՄԱՄՈՒԼԻ տակ է 231 – 233րդ թիւը :*

Անհատական թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը : Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ :

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)


Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)


*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ :*

*Մարսիլիահայ կազմակերպութիւններէն կը խնդրուի չխաչաձեւել :*

×

*Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը Հոկտեմբեր ութին, Կիրակի :*

×

*ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուառի սրահը :*

*ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ*

*Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, 1 Հոկտեմբեր, Կիրակի, աւանդական մատաղօրհնութիւնը տեղի պիտի ունենայ : Այս առթիւ պիտի պատարագէ Կաթ. Փոխանորդ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :*

*Ամէն անոնք որ կը փափաքին մասնակցիլ իրենց նուէրները պէտք է ղրկեն Պ. Ա. Մարտիրոսեանի :*

27 Րիւ Սէն – Ժիւսթ, Առնուվիլ :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը 9ին Մշակոյթի Տան մէջ : Կարեւոր օրակարգ : Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է :*

*ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը ճիշդ 20.30ին, «Թրիմէլա» դպրոցը : Կարեւոր օրակարգ : Բացակաները նկատի պիտի առնուին :*

*ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—*

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր– ընկերուհիները :*

*ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :*

*ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :*

*ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին :*

*ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին :*

*ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :*

*ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին*

*Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները : Շատ կարեւոր օրակարգ : Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին : Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները*





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սի.նակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գինները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆ

Աշնանային առաջին արշաւը յառաջի – կայ Կիրակի, Հոկտեմբեր 1, Շաւիլի մէջ:
Մեկնում Շաւիլի եկեղեցիէն ժամը 10.30ին.
Փարիզի ժամադրավայր՝ Կառ Մոն – փառնաս նոյն օրը ժամը 9-30ին :

### Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի հայ կին մը, երախայ մը նայելու եւ իրիկուան ճաշ պատրաստելու համար :
Հեռաձայնել՝
VIL. 36-47.

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Վարագայ Ս. Խաչի տօնը կը կատարուի օրուան յատուկ մասնաւոր արարողութեամբ :
Ամենայն Հայոց Կաթողիկոս – պատրիարք Տ. Տ. ՎԱԶԳԷՆ Ա.ի օծումի եւ գահակալութեան 6րդ տարեդարձը ըլլալով, հանդիսաւոր շուքով կը կատարուի Հայրապետական Մաղթանք :
Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ տօնի եւ մաղթանքի ձօնմամբ մատուցուած Ս. պատարագին:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Կը կատարուի մասնաւոր Հոգեհանգիստ՝ Եկեղեցիին ողբացեալ նախկին վաստակաւոր դպրապետ Յակոբ Մալաքեանի մահուան 6րդ տարելիցին առիթով, ինչպէս նաեւ իր ընտանեկից Քիրազեան գերդաստանին ննջեցեալներուն յիշատակին, ներկայութեամբ Փարիզէն Մալաքեան ընտանիքի անդամներ՝ Տիկին Արաքսի Յ. Մալաքեանի եւ Տէր եւ Տիկին Աշոտ Մալաքեանի:
Կը հրաւիրուին ներկայ գտնուիլ Մալաքեան եւ Քիրազեան ընտանիքներու ննջեցեալներուն յիշատակը յարգողներ :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՀԱՑԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Հայկազեան վարժարանը վերաբացուած է։Ծանօթ ուսուցչուհի եւ մանկավարժուհի Օր. Ընծայ Ստեփանեան կը դասաւանդէ ամէն հինգշաբթի առաւօտ ժամը 9էն մինչեւ կէսօր, եւ կէսօրէ վերջ ժամը 14էն մինչեւ 16:
Նոյնպէս Կիրակի առաւօտները :
Կը յանձնարարուի Լիոնահայ ծնողքներէն փութով արձանագրել տալ իրենց զաւակները, ամէն օր դիմելով եկեղեցւոյ գրասենեակը ժամը 16էն մինչեւ 19:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան — Վիէնէն Պ. Մուշեղ Մուրատեանէ իր զաւկին ամուսնութեան առթիւ յիսուն Ն. Ֆ., Տիկ. Սիրանոյշ Հարելեան յիսուն, Տիկ. Յովհաննէսեան քսան, Փարիզէն Տիկին Փառանձեմ Յովհաննէսեան 10 Ն. Ֆ., Ոմն իր կնոջ մահուան քառասունքին առթիւ քսան, Թարարէն Տիկին Արշալոյս Գոչունեան իր ամուսնոյն հոգւոյն համար 10 Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, 1 Հոկտեմբեր, Կիրակի, աւանդական մատաղօրհնութիւնը տեղի պիտի ունենայ: Այս առթիւ պիտի պատարագէ Կաթ. Փոխանորդ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:
Ամէն անոնք որ կը փափաքին մասնակցիլ իրենց նուէրները պէտք է ղրկեն Գ. Ա. Մարտիրոսեանի :
27 Րիւ Սէն – Ժիւսթ, Առնուվիլ :

### ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Տիկին Արշալոյս Հ. Սարգիսեանի նոր հասցէն է —

4, Rue de la Mare
MONTMORENCY (S. et O.)
Tél. : 964-19-67

### Կ'ՈՒԶՈՒԻ

Dem. Urgence MONTEUR pr ensemble Tricot (Cardigan - gansé et jupe doublée) grosses séries trav. assuré toute l'année Record Paris, 226, Rue St'Denis, Paris-2e



### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Գոմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:
Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Պ. Վահրամ Միսթիքի կողմէ:
Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան :

### ԾԱԽՈՒ ԷՆ

Լիլայի մէջ, երկու փավիյոն (մեթրոյէն երկու վայրկեան), Ա) մուտք, երկու կառատուն, խոհանոց, պատշգամ, տուշ, արտաքնոց, երկու սենեակ, պզտիկ խոհանոց մը :
Բ) Գետնայարկ, սենեակ, խոհանոց, պատշգամ եւ արտաքնոց, յարկի վրայ մէկ մեծ եւ մէկ պզտիկ սենեակ, (180 քառ. մեթր) :
Հասցէ — Արեւեան,
13, Rue Jean Poulmarch, Les Lilas.
VIL. 36-47

### Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը ..., Մշակոյթի Տան մէջ : Կարեւոր օրակարգ: Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է :
ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը ճիշդ 20-30ին, «Խրիմեան» դպրոցը : Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին :
ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ.Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները.—
Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր- ընկերուհիները :
ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափոմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:
ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:
ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:
ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:
ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին
ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին
Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր-ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչներ .

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ
ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ
GEORGE V, 31, Ave. George V, PARIS
Եղանակին առաջին պարահանդէսը
Զանազան անակնկալներ

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը : ՓՐՕվանս 77-73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ



### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սի.նակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ եշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

Այրի Տիկին Դերենիկ Ճիզմէճեան եւ զաւակները եւ Պ. Վազգէն Ճիզմէճեան (Իտալիա), Այրի Տիկին Ծիածան Սրապեան եւ Օր. Հրանոյշ Սրապեան (Փարիզ), Այրի Տիկին Նաթալիա Գ. Լազեան եւ զաւակը (Գահիրէ), Այրի Տիկին Անուշ Մալեան, Տիկին Անժէլ Քէհեաեան եւ զաւակները (Նիւ Եորք), Տէր եւ Տիկ. Նոյիկ Տէր Ստեփանեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Հրայր Սրապեան եւ զաւակը (Մարոք), եւ ընտանեկան բոլոր պարագաները կսկիծով կը ծանուցանեն իրենց հօր, մօր, քրոջ զաւկին, հօրեղբօր, եղբօր կնոջ եւ ազգականներուն՝

ՎԱԶԳԱՆՈՒՇ ՃԻԶՄԷՃԵԱՆԻ

եւ

ԴԵՐԵՆԻԿ ՃԻԶՄԷՃԵԱՆԻ

(Երզնկացի)

մահերը, որ տեղի ունեցան յետ երկարատեւ հիւանդութեան, Իտալիոյ մէջ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Օր. Մաննիկ Մեծատուրեան 10ական Ն. Ֆ. կը նուիրէ Շաւարշ Միսաքեան եւ Ս. Թէհլիրեան սրահներուն: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան .—

Օր. Ժագլին Զօպանեանի ընդ Պ. Յակոբ Թէրզեանի նշանախօսութեան առթիւ Պ. Վահէ Քիթապճեանէ յիսուն Ն. Ֆ., Պ. Մկրտիչ Յակոբեանէ իր զաւկին մկրտութեան առթիւ յիսուն, Պ. Ասատուր Պասմաճեանէ քսան Ն. Ֆ.:

## ՆՈՒԷՐ

Ողբ. Լեւոն Զաքարեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի, Տէր եւ Տիկ. Մինասօղլու կը նուիրեն 15 Ն. Ֆ. Աղքատախնամին: (Ստանալ «Յառաջ»էն):

ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան :

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ՚ընդունի :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ մը 20 – 35 տարեկան, իբրեւ վաճառորդ (վանտէօր) կերպասի վաճառատան համար :

Օգնական տղայ մը 15 – 20 տարեկան նոյն վաճառատան համար :

Դիմել՝

Etbs AGEDE

67, Rue de Cléry, Paris 2e

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Մշակութային Միութեան Փարիզի Վարչութեան ժողովը ստիպողաբար տեղի պիտի ունենայ այս Երկուշաբթի, ժամը 19ին, Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին մէջ: Վարչութեան անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեցւոյ Թաղ. խորհուրդը եւ նորակազմ Կրթ. մարմինը Թաղիս եւ շրջաններուն բոլոր ծնողքներուն կը յայտարարեն թէ մայրենի լեզուի ուսման համար դասաւանդութիւնները կը սկսին Հինգշաբթի 5 Հոկտեմբեր կէսօրէ վերջ ժամը 2ին, եկեղեցւոյ խորհրդարանի մէջ, արձանագրութիւնները Կիրակի առաւօտները եկեղեցւոյ խորհրդարանը :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Պ. Վահրամ Մխթիքի կողմէ:

Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորերը, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Հայկազեան վարժարանը վերաբացուած է:Տանօթ ուսուցչուհի եւ մանկավարժուհի Օր. Ընծայ Ստեփանեան կը դասաւանդէ ամէն հինգշաբթի առաւօտ ժամը 9էն մինչեւ կէսօր, եւ կէսօրէ վերջ ժամը 14էն մինչեւ 16:

Նոյնպէս Կիրակի առաւօտները :

Կը յանձնարարուի Լիոնահայ ծնողքներէն փութով արձանագրել տալ իրենց զաւակները, ամէն օր դիմելով եկեղեցւոյ գրասենեակը ժամը 16էն մինչեւ 19:





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ԻՍԻ .— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը ճիշդ 20.30ին, «Ֆրիմեան» դպրոցը : Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին :

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի կողմէ հրաւիրուած ընկերական ժողովները .—

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն՝ ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր- ընկերուհիները :

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ (Լափօմ), 1 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ խումբ, 1 Հոկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ խումբ, 30 Սեպտ. Շաբաթ երեկոյ, ժամը ճիշդ 21ին:

ՄՈՒՐԱՏ խումբ, 1 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 15ին:

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր - ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :

ՎԱԼԱՆՍ .— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 20.30ին, Աճարոնեան Ակումբ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

### ՎԵՐԱՄՈՒՏ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի դպրոցը կը վերաբացուի Հոկտեմբեր 5ին, Աճարոնեան Ակումբը, 26 Rue de Pontevès: Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները արձանագրել: Ուսուցչուհի՝ Տիկին Հայրապետեան :